ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

Պրոլետարներ բոլոր յերկրների,
միացե՛ք։

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 23-24 (30,31)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1937

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 23, 24 (30, 31)

ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ — 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՃԱՌԸ

## ՄՈՍԿՎԱ ՔԱՂԱՔԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳԻ ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՄ

1937 թվի դեկտեմբերի 11-ին, Մեծ թատրոնում

ՆԱԽԱԳԱՀՈՂ.— ԽՈՍՔԸ ՏՐՎՈՒՄ Է ՄԵՐ ԹԵԿՆԱԾՈՒ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻՆ։

ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ՅԵՐԵՎԱԼԸ ՏՐԻԲՈՒՆԻ ՎՐԱ, ԸՆՏՐՈՂՆԵՐԸ ԴԻՄԱՎՈՐՈՒՄ ԵՆ ՓՈԹՈՐԿԱԼԻ ՈՎԱՑԻԱՅՈՎ, ՎՈՐԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է ՄԻ ՔԱՆԻ ՐՈՊԵ։ ՄԵԾ ԹԱՏՐՈՆԻ ԱՄԲՈՂՋ ԴԱՀԼԻՃԸ ՎՈՏՔԻ ԿԱՆԳՆԱԾ ՎՈՂՋՈՒՆՈՒՄ Է ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻՆ։ ԴԱՀԼԻՃԻՑ ԱՆԸՆԴՀԱՏ ԼՍՎՈՒՄ ԵՆ ԲԱՑԱԿԱՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐ՝ «ԿԵՑՑԵ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԸ, ՈՒՌԱ», «ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԻԿ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՏԵՂԾՈՂ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻՆ ՈՒՌԱ», «ԿԵՑՑԵ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ՃՆՇՎԱԾՆԵՐԻ ԱՌԱՋՆՈՐԴ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԸ. ՈՒՌԱ»։

ՍՏԱԼԻՆ.— Ընկերներ, ճիշտ ասած՝ յես մտադրություն չունեյի հանդես գալ։ Բայց մեր հարգելի Նիկիտա Սերգեյեվիչը, կա-

բելի յէ անել, որ ուժով բերեց ինձ այստեղ, ժողովի․ արտասանիր, ասում է, մի լավ ճառ։ Ինչի՞ մասին անեմ, այսինքն ինչպիսի՞ ճառ։ Բոլորը, ինչ հարկավոր էր անել ընտրություններից առաջ, արդեն ասվել ու վերասվել է մեր ղեկավար ընկերներ Կալինինի, Մոլոտովի, Վորոշիլովի, Կագանովիչի, Յեժովի և շատ այլ պատասխանատու ընկերների ճառերի մեջ, էլ ի՞նչ կարելի յէ ավելացնել այդ ճառերին։

Պահանջվում է, ասում են, պարզաբանումներ ընտրական կամպանիայի մի քանի հարցերի վերաբերյալ։ Ինչպիսի՞ պարզաբանումներ, ինչպիսի՞ հարցերի վերաբերյալ։ Բոլորը, ինչ հարկավոր էր պարզաբանել, արդեն պարզաբանված և վերապարզաբանված է բոլշևիկների կուսակցության, թյան, կոմյերիտմիության, Արհեստակցական Միությունների Համամիութենական Կենտրոնական Խորհրդի, Պաշր-Ավիաքիմի, ֆիզկուլտուրայի գործերի կոմիտեի հայտնի դիմումների մեջ։ Եվ ի՞նչ կարելի յէ ավելացնել այդ պարզաբանումներին։

Իհարկե կարելի յեր մի թեթև ճառ անել ամեն ինչի և ոչնչի մասին (ԹԵԹԵՎ ԾԻԾԱՂ)։ Հնարավոր է, որ այդպիսի



ճառը կզբաղեցներ հասարակության։ Ասում են, որ այդպիսի ճառերի վարպետներ կան ոչ միայն այնտեղ, կապիտալիստական յերկրներում, այլև մեզ մոտ, խորհրդային յերկրում (ԾԻԾԱՂ, ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ)։ Բայց, նախ՝ յես այդպիսի ճառերի վարպետ չեմ. յերկրորդ՝ արժե արդյոք, որ մենք ժամանակ անցկացնելու գործերով զբաղվենք այժմ, յերբ մենք բոլորս, բոլշևիկներս, ինչպես ասում են, «մինչև կոկորդներս խրված ենք աշխատանքի մեջ»։ Յես կարծում եմ, որ չարժե։

Պարզ է, որ այսպիսի պայմաններում լավ ճառ չես ասի։

Բայց այնուամենայնիվ քանի որ յես դուրս եմ յեկել տրիբուն, իհարկե պետք է այսպես թե այնպես ասել թեկուզ մի բան (ԱՂՄԿԱԼԻՑ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ)։

Նախ և առաջ յես կուզեյի շնորհակալություն հայտնել (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ) ընտրողներին այն վստահության համար, որ ցույց են տվել նրանք (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ)։

Ինձ առաջադրել են պատգամավորության թեկնածու և խորհրդային մայրաքա-

ղաքի Ստալինյան օկրուգի ընտրական հանձնաժողովն ինձ ցուցակագրել է որպես պատգամավորության թեկնածու: Այդ, ընկերներ, մեծ վստահություն է: Թույլ տվեք բոլշևիկյան խորին շնորհակալություն հայտնել ձեզ այն վստահության համար, որ դուք ցույց տվիք բոլշևիկների կուսակցությանը, որի անդամն եմ հանդիսանում յես, և անձամբ ինձ, որպես այդ կուսակցության ներկայացուցչի (ԱՂՄԿԱԼԻ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Յես գիտեմ, թե ինչ է նշանակում վստահությունը: Այդ, բնականաբար, նոր, լրացուցիչ պարտականություններ է դնում ինձ վրա և, նշանակում է, նոր, լրացուցիչ պատասխանատվություն: Ինչ արած, մեզանում, բոլշևիկների մոտ ընդունված չէ հրաժարվել պատասխանատվությունից. Յես այդ ընդունում եմ ուրախությամբ (ԲՈՒՌՆ ՈՒ ՅԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Իմ կողմից յես կուզեյի հավաստիացնել ձեզ, ընկերներ, որ դուք կարող եք համարձակորեն հույս դնել ընկեր ՍՏԱԼԻՆԻ վրա (ԲՈՒՌՆ, ՅԵՐԿԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՉԼՌՈՂ ՈՎԱՑԻԱ: Բացականչություններ դահլի-



ճից՝ «Իսկ մենք բոլորս ընկեր ՍՏԱԼԻՆԻ կողմն ենք»): Կարող եք հույս ունենալ այն բանի վրա, որ ընկեր ՍՏԱԼԻՆԸ կկարողանա կատարել իր պարտքը ժողովրդի հանդեպ (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ), բանվոր դասակարգի հանդեպ (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ), գյուղացիության հանդեպ (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ), ինտելիգենցիայի հանդեպ (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Այնուհետև, յես կուզեյի, ընկերներ, շնորհավորել ձեզ մոտեցող համաժողովրդական տոնի առթիվ, Խորհրդային Միության Գերագույն Խորհրդի ընտրությունների օրվա առթիվ (ԱՂՄԿԱԼԻՑ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Առաջիկա ընտրությունները սովորական ընտրություններ չեն, ընկերներ: Այդ, մեր բանվորների, մեր գյուղացիների, մեր ինտելիգենցիայի իսկապես համաժողովրդական տոնն է (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Դեռ յերբեք աշխարհում չեն յեղել այդպիսի իսկապես ազատ ու իսկապես դեմոկրատիկ ընտրություններ, յերբեք: Պատմությունը չգիտե մեկ ուրիշ այդպիսի որինակ (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Բանն այն չէ, որ

մեզ մոտ ընտրությունները կլինեն ընդհանուր, հավասար, գաղտնի և ուղղակի, թեև այդ արդեն ինքնըստինքյան ունի մեծ նշանակություն: Բանն այն է, որ ընդհանուր ընտրությունները մեզ մոտ կանցկացվեն որպես առավել ազատ և առավել դեմոկրատիկ ընտրություններ աշխարհի ամեն մի այլ երկրի ընտրությունների համեմատությամբ:

Ընդհանուր ընտրություններ անցնում են ու տեղի ունեն նաև մի քանի կապիտալիստական երկրներում, այսպես կոչված, դեմոկրատիկ երկրներում: Բայց ինչպիսի իրադրության մեջ են այնտեղ անցնում ընտրությունները: Դասակարգային ընդհարումների իրադրության մեջ, դասակարգային թշնամանքի իրադրության մեջ, կապիտալիստների, կալվածատերերի, բանկիրների և կապիտալիզմի այլ ակուլաների կողմից ընտրողների նկատմամբ ճնշում գործադրելու իրադրության մեջ: Չի կարելի այդպիսի ընտրությունները, եթե նույնիսկ դրանք ընդհանուր են, հավասար, գաղտնի և ուղղակի, անվանել լիովին ազատ և լիովին դեմոկրատիկ ընտրություններ:



Մեզ մոտ, մեր երկրում, ընդհակառակը, ընտրություններն անցնում են միանգամայն այլ իրադրության մեջ: Մեզանում չկան կապիտալիստներ, չկան կալվածատերեր, հետևաբար, չկա և ճնշում ունևոր դասակարգերի կողմից չունևորների նկատմամբ: Մեզանում ընտրություններն անցնում են բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի համագործակցության իրադրության մեջ, նրանց փոխադարձ վստահության իրադրության մեջ, ես կասեյի փոխադարձ բարեկամության իրադրության մեջ, որովհետև մեզանում չկան կապիտալիստներ, չկան կալվածատերեր, չկա շահագործում և ուստի չկա այնպիսի մեկը, որ ճնշի ժողովրդին խեղաթյուրելու համար նրա կամքը:

Ահա թե ինչու մեր ընտրությունները հանդիսանում են միակ իսկապես ազատ ու իսկապես դեմոկրատիկ ընտրությունները ամբողջ աշխարհում (ԱՂՄԿԱԼԻՑ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Այսպիսի ազատ ու իսկապես դեմոկրատիկ ընտրություններ կարող էին առաջ գալ միայն սոցիալիստական կարգերի հաղթանակի հողի վրա, միայն այն բանի բազա-

յի վրա, վոր մեզանում սոցիալիզմը վոչ թե հենց այնպես կառուցվում ե, այլ արդեն մտել ե կենցաղի մեջ, ժողովրդի առօրյա կենցաղի մեջ: Տասը տարի սրանից առաջ կարելի կլիներ դիսկուսիա անել այն մասին, թե կարելի յե արդյոք մեզանում սոցիալիզմ կառուցել թե վոչ: Այժմ արդեն այդ դիսկուսիոն հարց չե: Այժմ այդ փաստերի հարց ե, կենդանի կյանքի հարց, կենցաղի հարց, վորը տոգորում ե ժողովրդի ամբողջ կյանքը: Մեր փաբրիկներում ու գործարաններում աշխատում են առանց կապիտալիստների: Աշխատանքը ղեկավարում են ժողովրդի միջից յելած մարդիկ: Այդ ել հենց մեզ մոտ կոչվում ե սոցիալիզմ՝ գործնականում: Մեր դաշտերում աշխատում են հողի աշխատավորները առանց կալվածատերերի, առանց կուլակների: Աշխատանքը ղեկավարում են ժողովրդի միջից յելած մարդիկ: Այդ ել հենց մեզ մոտ կոչվում ե սոցիալիզմ՝ կենցաղում, այդ ել հենց մեզ մոտ կոչվում ե ազատ սոցիալիստական կյանք:

Ահա այդ բազայի վրա յել մեզանում առաջ յեկան նոր, իսկապես ազատ ու իսկապես դեմոկրատիկ ընտրությունները, ընտ-



րություններ, վորի նմանը չկա մարդկության պատմության մեջ:

Ինչպես հապա այդ բանից հետո չշնորհավորել ձեզ համաժողովրդական տոնի որվա առթիվ, Խորհրդային Միության Գերագույն Խորհրդի ընտրությունների որվա առթիվ (ԱՄԲՈՂՋ ԴԱՀԼԻՃԻ ԲՈՒՌՆ ՈՎԱՑԻԱ):

Այնուհետև յես կուզեյի, ընկերներ, ձեզ մի խորհուրդ տալ, պատգամավորության թեկնածուի խորհուրդ՝ իր ընտրողներին: Յեթե վերցնենք կապիտալիստական յերկրները, ապա այնտեղ պատգամավորների և ընտրողների միջև գոյություն ունեն վորոշ, յուրահատուկ, յես կասեյի բավականաչափ տարորինակ հարաբերություններ: Քանի դեռ տեղի յեն ունենում ընտրությունները, պատգամավորները խաղում են ընտրողների հետ, սիրալիրություն են անում նրանց առաջ, յերդվում են հավատարմության մեջ, տալիս են մի կույտ ամեն տեսակ խոստումներ: Դուրս ե գալիս, վոր պատգամավորների կախվածությունն ընտրողներից լիակատար ե: Հենց վոր ընտրությունները կայացան և թեկնածուները վերածվեցին պատգամավորների, հարաբե-

թյունները արմատապես փոխվում են: Ընտրողներից պատգամավորների կախման փոխարեն ստացվում ե նրանց լիակատար անկախություն: Չորս կամ հինգ տարվա ընթացքում, այսինքն ընդհուպ մինչև նոր ընտրությունները, պատգամավորն իրեն զգում ե միանգամայն ազատ, ժողովրդից, իր ընտրողներից անկախ: Նա կարող ե անցնել մեկ բանակից մյուսը, նա կարող ե ճիշտ ճանապարհից շեղվել սխալ ճանապարհի, նա կարող ե նույնիսկ խճճվել ոչ բոլորովին անհրաժեշտ բնույթի մեքենայությունների մեջ, նա կարող ե թավալգլոր գալ ինչպես ինքը կամենում ե,— նա անկախ ե:

Կարելի յե արդյոք այդպիսի հարաբերությունները համարել նորմալ: Ոչ մի դեպքում, ընկերներ: Այդ հանգամանքը հաշվի առավ մեր Սահմանադրությունը և նա կիրառեց այնպիսի մի օրենք, որի ուժով ընտրողներն իրավունք ունեն ժամանակից շուտ հետ կանչել իրենց պատգամավորներին, յեթե նրանք սկսում են խորամանկել, յեթե նրանք շեղվում են ճանապարհից, յեթե նրանք մոռանում են ժողովրդից,



ընտրողներից իրենց կախման մասին:

Այդ հիանալի օրենք ե, ընկերներ: Պատգամավորը պետք ե գիտենա, որ ինքը ժողովրդի ծառան ե, նրա պատվիրակը Գերագույն Խորհրդում և նա պետք ե իրեն պահի այն գծով, որով նրան նակազ ե տվել ժողովուրդը: Շեղվեց ճանապարհից, ընտրողներն իրավունք ունեն պահանջել, որ նշանակվեն նոր ընտրություններ և ճանապարհից շեղված պատգամավորին նրանք իրավունք ունեն սևացնող քվե տալ (ԾԻԾԱՂ, ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Այդ հիանալի օրենք ե: Իմ խորհուրդը, պատգամավորության թեկնածուի խորհուրդն ե իմ ընտրողներին, հիշել ընտրողների այդ իրավունքի մասին— ժամանակից շուտ պատգամավորներին հետ կանչելու իրավունքի մասին, հետևել իրենց պատգամավորներին, վերահսկել նրանց և յեթե նրանց խելքին կփչի շեղվել ճիշտ ճանապարհից, ուսից թոթափել նրանց, պահանջել, որպեսզի նշանակվեն նոր ընտրություններ: Կառավարությունը պարտավոր ե նշանակել նոր ընտրություններ: Իմ խորհուրդն ե՝ հիշել այդ օրենքի մասին և

հարկ յեղած դեպքում օգտագործել այն:

Վերջապես, պատգամավորության թեկնածույի ևս մեկ խորհուրդ իր ընտրողներին: Ի՞նչ է հարկավոր առհասարակ պահանջել իր պատգամավորներից, յեթե վերցնելու լինենք բոլոր հնարավոր պահանջներից առավել տարրական պահանջները:

Ընտրողները, ժողովուրդը, պետք է իրենց պատգամավորներից պահանջեն, վորպեսզի նրանք մնան իրենց խնդիրների բարձրության վրա, վորպեսզի նրանք աշխատանքում չիջնեն մինչև քաղաքական ոբիվատելների մակարդակը, վորպեսզի նրանք մնան լենինյան տիպի քաղաքական գործիչների պոստում, վորպեսզի նրանք լինեն նույնպիսի պարզ ու վորոշակի գործիչներ, ինչպես Լենինն էր (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ), վորպեսզի նրանք մարտում լինեն նույնպիսի անվեհերներ և անողոք ժողովրդի թշնամիների նկատմամբ, ինչպիսին էր Լենինը (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ), վորպեսզի նրանք ազատ լինեն ամեն տեսակ խուճապից, խուճապի նման ամեն տեսակ բանից, յերբ գործն սկսում է բարդանալ և հորիզոնի վրա ուրվագծ-



վում է վորևէ վտանգ, վորպեսզի նրանք նույնպես ազատ լինեն խուճապի նման ամեն բանից, ինչպես ազատ էր Լենինը (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ), վորպեսզի նրանք լինեն նույնպես իմաստուն և վոչ հապճեպ՝ բարդ հարցերի լուծման ժամանակ, վորտեղ հարկավոր է բազմակողմանի կողմնորոշում և բոլոր պլյուսների ու մինուսների բազմակողմանի հաշվառում, ինչպիսին էր Լենինը (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ), վորպեսզի նրանք լինեն նույնպես ճշմարտացի ու ազնիվ, ինչպիսին էր Լենինը (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ), վորպեսզի նրանք նույնպես սիրեն իրենց ժողովրդը, ինչպես սիրում էր նրան Լենինը (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Մենք կարող ենք արդյոք ասել, վոր պատգամավորության բոլոր թեկնածուները հենց այդ տեսակ գործիչներ են: Յես այդ բանը չեյի ասի: Աշխարհի յերեսին լինում են ամեն տեսակ մարդիկ, աշխարհի յերեսին լինում են ամեն տեսակ գործիչներ: Կան մարդիկ, վորոնց մասին չես կարող ասել, թե ով է նա. ա՛րդյոք նա լավն է, ա՛րդյոք նա վատն է, ա՛րդյոք քաջարի յէ, ա՛րդյոք վախլուկ, ա՛րդյոք նա մինչև վերջ

ժողովրդի կողմն է, արդյոք նա ժողովրդի թշնամիների կողմն է: Կան այդպիսի մարդիկ և կան այդպիսի գործիչներ: Այդպիսիք կան նաև մեզանում, բոլշևիկների մեջ: Ինքներդ գիտեք, ընկերներ, ընտանիքն առանց այլանդակի չի լինի (ԾԻԾԱՂ, ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Անորոշ տիպի այդպիսի մարդկանց մասին, այնպիսի մարդկանց մասին, որոնք ավելի շուտ հիշեցնում են քաղաքական ոբիվատելների, քան թե քաղաքական գործիչների, այդպիսի անորոշ, չձևակերպված տիպի մարդկանց մասին բավական շեշտակի ասել է ռուս մեծ գրող Գոգոլը՝ «Մարդիկ, ասում է, անորոշ են, ոչ այս են ոչ այն են, չես հասկանա, թե ինչ մարդիկ են, ոչ քաղաքում Բոգդան են, ոչ գյուղում՝ Սելիֆան» (ԾԻԾԱՂ, ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Այդպիսի անորոշ մարդկանց ու գործիչների մասին նույնպես բավականին շեշտակի ասվում է մեզ մոտ ժողովրդի մեջ՝ «Այնպես, մարդ է էլի, ոչ ձուկ է, ոչ միս» (ԸՆԴՀԱՆՈՒՐ ԾԻԾԱՂ, ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ), «ոչ աստծուն ճրագ, ոչ սատանային կրակ» (ԸՆԴՀԱՆՈՒՐ ԾԻԾԱՂ, ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):



Ես չեմ կարող լիակատար վստահությամբ ասել, որ պատգամավորության թեկնածուների մեջ (ես նրանց առաջ չափազանց ներողություն եմ խնդրում իհարկե) և մեր գործիչների մեջ չկան այնպիսի մարդիկ, որոնք ավելի շուտ հիշեցնում են քաղաքական ոբիվատելների, որոնք իրենց բնույթով, իրենց ֆիզիոնոմիայով հիշեցնում են այն տիպի մարդկանց, որոնց մասին ժողովրդի մեջ ասվում է, թե «ոչ աստծուն ճրագ են, ոչ սատանային կրակ» (ԾԻԾԱՂ, ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ես կուզեյի, ընկերներ, որպեսզի դուք սիստեմատիկաբար ազդեյիք ձեր պատգամավորների վրա, որպեսզի ներշնչեյիք նրանց, որ նրանք պետք է իրենց առջև ունենան մեծ ԼԵՆԻՆԻ մեծ պատկերը և ամեն բանում նմանվեն ԼԵՆԻՆԻՆ (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ընտրողների ֆունկցիաները իհարկե չեն վերջանում ընտրություններով: Դրանք շարունակվում են տվյալ գումարման Գերագույն խորհրդի գոյության ամբողջ ժամանակաշրջանում: Ես արդեն խոսեցի

այն որենքի մասին, որին ընտրողներին իրավունք է տալիս ժամանակից շուտ հետ կանչելու իրենց պատգամավորներին, եթե նրանք շեղվում են ճիշտ ճանապարհից։ Նշանակում է ընտրողների պարտականությունն ու իրավունքն այն է, որ նրանք ամբողջ ժամանակ հսկողության տակ պահեն իրենց պատգամավորներին և որպեսզի նրանք ներշնչեն նրանց՝ ոչ մի դեպքում չիջնել քաղաքական ոբիվատելների մակարդակին, որպեսզի նրանք, ընտրողները, ներշնչեն իրենց պատգամավորներին՝ լինել այնպիսին, ինչպիսին էր մեծ ԼԵՆԻՆԸ (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ)։

Այս է ընկերներ իմ յերկրորդ խորհուրդը ձեզ՝ պատգամավորության թեկնածուի խորհուրդն իր ընտրողներին (ԲՈՒՌՆ, ՅԵՐԿԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՉԼՌՈՂ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ, ՎՈՐՈՆՔ ՎԵՐ ԵՆ ԱԾՎՈՒՄ ՕՎԱՑԻԱՅԻ։ ԲՈԼՈՐԸ ՎՈՏՔԻ ՅԵՆ ԿԱՆԳՆՈՒՄ ՅԵՎ ԻՐԵՆՑ ՀԱՅԱՑՔՆԵՐՆ ՈՒՂՂՈՒՄ ԵՆ ԿԱՌԱՎԱՐԱԿԱՆ ՕԹՅԱԿԸ, ՈՒՐ ԱՆՑՆՈՒՄ Է ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԸ։ ԼՍՎՈՒՄ ԵՆ ԲԱՑԱԿԱՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐ՝ «ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ ՈՒՌԱ», «ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻՆ ՈՒՌԱ», «ԿԵՑՑԵ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԸ, ՈՒՌԱ», «ԿԵՑՑԵ ՄԻՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ԼԵՆԻՆՅԱՆԸ– ԹԵԿՆԱԾՈՒՆ— ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԸ, ՈՒՌԱ»։



---

Պ. ՅՈՒԴԻՆ

# ՇԱՀԱԳՈՐԾՈՂ ԴԱՍԱԿԱՐԳԵՐԻ ՎՈՉՆՉԱՑՈՒՄԸ ԽՍՀՄ-ՈՒՄ

Մարքս-լենինյան ուսմունքը սոցիալիզմի մասին ամենայն լիակատարությամբ կենսագործված է ու հաստատված ԽՍՀՄ-ում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության հաղթանակի հետևանքով:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության քառասնամյակը մարքս-լենինյան թեորիայի մեծագույն տրիումֆն է հանդիսանում:

Մինչև սոցիալիստական հեղափոխությունն ավելի ու ավելի լիակատար հաստատումն էր գտնում մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը կապիտալիզմի օրենքների մասին, կապիտալիզմի անխուսափելի կործան-



ման, և բուրժուական կարգերի վոչնչացման ուղիների ու միջոցների մասին: Հասարակության սոցիալիստական վերակառուցման ուսմունքը կարող էր պրակտիկ կյանքում իրականացվել միայն սոցիալիստական հեղափոխության հաղթանակով և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումով:

Սոցիալիզմի կառուցումը ԽՍՀՄ-ում, ամենայն լիակատարությամբ հաստատեց մարքս-լենինյան ուսմունքը պրոլետարական հեղափոխության, պրոլետարիատի դիկտատուրայի և սոցիալիզմի մասին: Մարքսիզմ-լենինիզմի թեորիան և հեղափոխական պայքարի պրակտիկան միշտ կազմում են միասնական ամբողջություն:

Մարքս-լենինյան ուսմունքը դասակարգերի, դասակարգային պայքարի մասին, պրոլետարիատի դիկտատուրայի մասին և շահագործող դասակարգերի վոչնչացման ուղիների մասին, փայլուն հաստատումն գտավ միջազգային պրոլետարիատի դասակարգային պայքարի պատմության մեջ և, հատկապես, ԽՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի մեջ:

***

Մարքս-լենինյան ուսմունքը դասակարգերի և դասակարգային պայքարի մասին, կարեվորագույն հիմքերից մեկն է հանդիսանում պրոլետարիատի ամբողջ աշխարհայեցողության մեջ: Մարքսն ու Ենգելսը ստեղծելով գիտական հեղափոխական թեորիան, մշակելով բանվոր դասակարգի դասակարգային պայքարի ստրատեգիան ու տակտիկան, ստեղծեցին դասակարգերի մասին ուսմունքը, ստեղծեցին պրոլետարիատի դիկտատուրայի մասին ուսմունքը, վորպես կապիտալիստական հասարակությունը հեղափոխական ճանապարհով կոմունիստականի վերափոխելու զենք: Այդ ուսմունքը, պատմական նոր պայմաններում— իմպերիալիզմի ու պրոլետարական հեղափոխության դարաշրջանում — զարգացրին ու առաջ տարան Լենինը և Ստալինը:

Դասակարգերի և դասակարգային պայքարի մասին մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի մեջ յելակետային դրություն է հանդիսանում այն, վոր արտադրության միջոցների մասնավոր սեփականության առաջացումով, հասարակությունը բաժան-



վեց մարդկանց հակադիր, միմյանց նկատմամբ թշնամի մեծ խմբերի՝ արտադրության միջոցների տերերի դասակարգի, (շահագործողների), վորոնք հասարակության փոքրամասնությունն են կազմում, և չունեվորների, արտադրության միջոցներից զրկվածների մասսայի (շահագործվողների):

Հասարակության՝ դասակարգերի բաժանվելու հիմքում ընկած է տարբեր վերաբերմունքը դեպի արտադրության միջոցները: Հասարակությունը դասակարգերի յե բաժանվում նայած այն բանին, թե մարդկանց այս կամ այն մեծ խումբն ինչպիսի վերաբերմունք ունի դեպի արտադրության միջոցները:

Յեկամուտ ստանալու յեղանակը չէ՛, վոր վճռականն է հանդիսանում հասարակության դասակարգերի բաժանվելու գործում, ինչպես այդ ուզում են ապացուցել Յերկրորդ Ինտերնացիոնալի ռեվիզիոնիստներ Կաուցկին, Կունովը և ուրիշները. յեկամուտ ստանալու յեղանակը և այդ յեկամուտի չափը հենց, կախված են դեպի արտադրության միջոցները մարդկանց ունեցած վերաբերմունքից:

Յեկամուտի բաշխումը կատարվում է

արտադրության միջոցների բաշխման հիման վրա: Մարքսը «Քաղաքատնտեսության քննադատություն» իր գրքի մեջ գրել է.

«...Բաշխումը, նախքան մթերքների բաշխում լինելը, հանդիսանում է՝ 1) արտադրության միջոցների բաշխում, և 2)— վորն իրենից ներկայացնում է նույն այդ հարաբերության հետագա բնորոշումը— հասարակության անդամների բաշխումն ըստ արտադրության զանազան տեսակների (անհատների յենթարկվելն արտադրական վորոշ հարաբերություններին): Մթերքների բաշխումն, ակներևաբար, հանդիսանում է սոսկ արդյունքն այն բաշխման, վոր պարունակված է արտադրության բուն պրոցեսի ներսում և վորը վորոշում է արտադրության կառուցումը»[1]:

Այստեղ Մարքսը միանգամայն պարզ ճանաչում է, վոր 1) հասարակությունը դասակարգերի բաժանվելու հիմքում ըն-

1) Կարլ Մարքս— «Քաղաքատնտեսության քննադատությունը» էջ՝ 20, ՀԱՄԿ(բ)Կ Կենտկոմի Կուսհրատ, 1935 թ.



կած է արտադրության միջոցների բաշխումը, 2) յեկամուտների բաշխումը հասարակության անդամների զանազան խմբերի միջև, հանդիսանում է արտադրության միջոցների բաշխման արդյունքը: Հետևապես, հասարակությունը դասակարգերի բաժանվելու հիմքում, դասակարգային արտադրական հարաբերությունների հիմքում, ընկած է արտադրության միջոցների բաշխումը:

Հակամարքսիստները՝ մենշևիկյան-բուխարինական-տրոցկիստական բանակից, եր ժամանակ փորձում եյին ապացուցել, վոր հասարակության բաժանվելը դասակարգերի, կախված է արտադրության պրոցեսի կազմակերպման մեջ հասարակության զանազան խմբերի ունեցած դերից: Այդ «թեորիայի» համաձայն, հասարակությունը դասակարգերի յե բաժանվում նայած արտադրության մեջ ունեցած կազմակերպչական դերին. յեթե մի խումբ կառավարում է արտադրությունը, ապա նա տիրապետող դասակարգ է կազմում, իսկ յեթե նա չի կառավարում արտադրությունը, այլ յենթարկվում է, ապա այդ ճնշված դասակարգն է: Այդ «թեորիան» ամենից

ավելի պարզ կերպով արտահայտեց Ա. Բոգդանովը, որը գտնում էր, որ ամբողջ հասարակական կյանքի հիմքը հանդիսանում են կազմակերպչական ունակությունները և ոչ թե արտադրության նյութական պրոցեսը: Ինչպես Կաուցկու տեսակետը, այնպես և Բոգդանովի, Բուխարինի ու մյուսների տեսակետը, իրենցից ներկայացնում են դասակարգերի մասին յեղած բուրժուական թեորիաների կրկնությունը:

Բոգդանովի բուրժուական թեորիայի դիրքերի վրա է միշտ կանգնած յեղել Բուխարինը, որը դարձավ ժողովրդի թշնամի: Նա գրում էր, թե «հասարակական դասակարգ ասելով, հասկացվում է արտադրության մեջ միանման դեր խաղացող մարդկանց ամբողջությունը»:

Դասակարգերի այս բուրժուական բնորոշումն անտեսում, մթագնում է դասակարգերի միջեվ յեղած տարբերության վճռական հատկանիշները— տարբեր վերաբերմունքը դեպի արտադրության միջոցները և դասակարգային հակասություններն արտադրության միջոցների մոնոպոլ տերերի (շահագործողների) ու արտադրու-



թյան միջոցներից զրկվածների (շահագործվողների) միջեվ:

Մարքսիզմին արմատապես թշնամի բուխարինյան «թեորիայի» համաձայն, կապիտալիստը կապիտալիստ է հանդիսանում ոչ այն պատճառով, որ նա արտադրության միջոցների՝ ֆաբրիկների ու գործարանների մասնավոր սեփականատերն է, այլ որովհետեվ նա կառավարում է արդյունաբերական ձեռնարկությունները, կազմակերպում է արտադրությունը:

Այս բոլորը վկայում են միայն այն մասին, որ Բուխարինը միշտ յեղել է դասակարգերի վերաբերյալ բացահայտորեն բուրժուական հայացքների պաշտպան:

Որ նման հայացքները բուրժուական են, ապոլոգետիկ և մարքսիզմի հետ ոչ մի ընդհանուր բան չունեն, ցույց է տալիս այն քննադատությունը, որին Կ. Մարքսն իր ժամանակ յենթարկել է այդ տեսակի «թեորիաները»:

Մարքսը «Կապիտալի» առաջին հատորում գրել է.

«Կապիտալիստն այն պատճառով չի հանդիսանում կապիտալիստ, որ նա կառավարում է արդյունաբերական

ձեռնարկությունները,— ընդհակառակը, նա արդյունաբերության ղեկավարն է դառնում նրա համար, վոր նա կապիտալիստ է: Բարձրագույն իշխանությունն արդյունաբերության մեջ դառնում է կապիտալի ատրիբուտ, ճիշտ այնպես, ինչպես ֆեոդալական դարաշրջանում բարձրագույն իշխանությունը ռազմական գործի մեջ և դատարանում՝ հողային սեփականության ատրիբուտն եր»[2]):

Դասակարգերի մասին յեղած մենշեվիկյան և բուխարինական «թեորիաների» հակահեղափոխական իմաստն ե՛լ ավելի պարզ կդառնա, յերբ մենք անդրադառնանք այն բանին, թե այդ «թեորիաներն» ինչպիսի դեր են խաղում դասակարգային պայքարի պրակտիկայում: Դրանք անհրաժեշտ են բուրժուազիայի գործակալներին, հիմնավորելու համար բուրժուազիայի և պրոլետարիատի դասակարգային շահերի «հաշտեցման» ոպորտունիստական պրակտիկան: Չե՞ վոր, յեթե ամբողջ խնդիրը միայն յեկամուտի մեծության և այն ստանալու

2) Կարլ Մարքս— «Կապիտալ» հատ. I, եջ 330. ՀԱՄԿ(բ)Կ Կենտկոմի Կուսհրատ, 1937 թ.



յեղանակի մեջ է, ապա յեկամուտի չափը կարելի յե աստիճանաբար հավասարեցնել և այդպիսով դասակարգային հակասությունները կարելի յե «վերացնել» խաղաղ կարգով, համաձայնությամբ, ամեն տեսակ «միջդասակարգային» կազմակերպություններ ստեղծելով, կապիտալիստական պետության կառավարման որգանների մեջ մտնելու ճանապարհով, և այլն, և այլն: Կ. Կաուցկին «Արյունոտ հեղափոխություն» հոդվածի մեջ հատկապես ընդգծում է «կապիտալիստների զանազան խավերի միջեվ, ինչպես նաև պրոլետարիատի զանազան խավերի միջեվ գոյություն ունեցող տարբերությունը հաշվի առնելու» անհրաժեշտությունը:

Լենինը և Ստալինը նարոդնիկների, մենշևիկների ու եսերների դեմ մղված պայքարում, կապիտալիզմի տրոցկիստական ու բուխարինական հակահեղափոխական ռեստավրատորների դեմ մղված պայքարում, պաշտպանում և զարգացնում են Մարքսի ուսմունքը, դասակարգերի և դասակարգային պայքարի մասին:

Կոմունիստական չաբաթօրյակների մասին բրոշյուրի մեջ («Մեծ Նախաձեռնու-

թյուն»)— Լենինը տվել է դասակարգերի՝ իր վորոշակիությամբ ու պարզությամբ բացառիկ մարքսիստական բնորոշումը.

«Դասակարգեր կոչվում են մարդկանց մեծ խմբերը, վորոնք տարբերվում են ըստ իրենց գրաված տեղի հասարակական արտադրության պատմականորեն վորոշ սիստեմում, ըստ իրենց ունեցած հարաբերության (մեծ մասամբ ամրապնդված և ձևակերպված օրենքով) արտադրության միջոցների նկատմամբ, ըստ իրենց դերի աշխատանքի հասարակական կազմակերպման մեջ, և, հետեվաբար. ըստ իրենց տրամադրության տակ յեղած հասարակական հարստության բաժնի ստացման յեղանակների և չափերի: Դասակարգերը մարդկանց այնպիսի խմբեր են, վորոնցից մեկը կարող է յուրացնել մյուսի աշխատանքը, շնորհիվ հասարակական տնտեսության վորոշ ձևի մեջ նրանց գրաված տեղի տարբերության»[3]):

Ցեկամուտի աղբյուրը, նրա ստացման յեղանակներն ու չափերը Լենինը դիտում

[3]) Վ. Ի. Լենին— Յերկեր հատ, 24-րդ, եջ 337.



է, վորպես ածանցյալ մոմենտ, վորը վորոշվում է դեպի արտադրության միջոցները ունեցած վերաբերմունքով:

Մարդկանց մեկ խումբը կարող է յուրացնել մյուս խմբի աշխատանքը միայն այն պատճառով, վոր նա (ուրիշի աշխատանքը յուրացնող խումբը) տերն է հանդիսանում արտադրության միջոցների, հանդիսանում է աշխատանքի պայմանների մոնոպոլ սեփականատերը:

Դասակարգային անտագոնիստական հակասությունները— շահագործողների ու շահագործվողների միջեվ յեղած հակասությունները— անհաշտելի յեն: Տիրապետող դասակարգերից վոչ մեկը յերբեք կամավոր կերպով չի զիջել, և չի զիջի, իր դասակարգային տիրապետությունը: Դասակարգերը պատմական թատերաբեմից չեն իջնում կամավոր կերպով, ըստ համաձայնության: Դասակարգերից յուրաքանչյուրը տիրապետության գլուխ է կանգնում միայն դրանից առաջ գոյություն ունեցող կարգերը բռնի կերպով տապալելու հետեվանքով: «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի» մեջ Մարքս և Ենգելսը գրել են.

«Մինչև այժմ գոյություն ունեցող բոլոր հասարակությունների պատմությունը յեղել է դասակարգերի պայքարի պատմություն:

Ազատն ու ստրուկը, պատրիկն ու պլեբեյը, կալվածատերն ու ճորտը, վարպետն ու յենթավարպետը, կարճ՝ ճնշողը և ճնշվողը յեղել են միմյանց նկատմամբ հավիտյան անտագոնիզմի մեջ, անվերջ մղել են մերթ թաքնված, մերթ բացահայտ պայքար, վորը միշտ վերջացել է ամբողջ հասարակական շենքի հեղափոխական ճանապարհով՝ վերակառուցմամբ, կամ թե պայքարող դասակարգերի ընդհանուր կործանումով»[4]):

Վաղեմի, պատմական ժամանակներից ի վեր յերբ յերևան է յեկել արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, իսկ նրա հետ միասին նաև հասարակության բաժանումը դասակարգերի, հասարակությունը բաժանվում է տնտեսապես ու քաղաքականապես տիրապետող դա-

4) Կ. Մարքս և Ֆ. Էնգելս— «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը», եջ 21-22, ՀԱՄ Կ(բ) Կենտկոմի Կուսհրատ, 1937 թ.



սակարգի և տնտեսապես ու քաղաքականապես ճնշված դասակարգի:

Դասակարգային զանազան ֆորմացիաներում կարող են գոյություն ունենալ մի քանի դասակարգեր (օրինակ, կապիտալիզմի օրոք՝ կապիտալիստները, բանվորները, կալվածատերերը, գյուղացիները), բայց հիմնական դասակարգերը, վորոնք վորոշում են հասարակության ստրուկտուրան, տիպը, բնույթը, հանդիսանում են յուրաքանչյուր դասակարգային հասարակական ֆորմացիայի համար բնորոշ յերկու դասակարգ:

Մարդկության պատմության մեջ առաջին դասակարգային հասարակությունը յեղել են ստրկատիրական կարգերը: Ստրկատերեր և ստրուկներ— ահա ստրկատիրական հասարակության հիմնական դասակարգերը: Ստրկատերերին եյին պատկանում վոչ միայն արտադրության միջոցները, այլև ինքը՝ բանվորական ուժը. ստրուկն ստրկատիրոջ մասնավոր սեփականությունն եր:

Բնութագրելով դասակարգային հարաբերությունները ստրկատիրոջ և ստրուկի միջև, Մարքսը գրում եր.

«Ստրուկն իր բանվորական ուժը չէր վաճառում ստրկատիրոջը… Ստրուկը, իր բանվորական ուժի հետ միասին, մեկ ընդմիշտ վաճառված է իր տիրոջը: Նա— ապրանք է, որը կարող է մեկ սեփականատիրոջ ձեռքից անցնել մյուսի ձեռքը: Նա ինքը— ապրանք է, բայց բանվորական ուժը չի հանդիսանում նրա ապրանքը»[5]):

Ստրուկների հեղափոխության հետևանքով լիկվիդացիայի ենթարկված ստրկատիրական կարգերին փոխարինելու եկան ֆեոդալիզմի կարգերը:

«Ստրուկների հեղափոխությունը,— ասում է ընկեր Ստալինը,— լիկվիդացիայի ենթարկեց ստրկատերերին և վերացրեց աշխատավորների շահագործման ստրկատիրական ձևը: Բայց դրանց տեղը նա դրեց ճորտատերերին ու աշխատավորների շահագործման ճորտատիրական ձևը: Մի տեսակի շահագործողները փոխարինվեցին այլ տեսակի շահագործողներով: Ստրկատի-

5) Կարլ Մարքս— «Վարձու աշխատանք և կապիտալ», էջ 21-22, ՀԱՄԿ(բ)Կ Կենտկոմի կուսհրատ, 1937 թ.



րության ժամանակ «օրենքը» ստրկատերերին թույլ էր տալիս սպանելու ստրուկներին: Ճորտատիրական կարգերի ժամանակ «օրենքը» ճորտատերերին թույլ էր տալիս «միմիայն» վաճառելու ճորտերին»[6]):

Ֆեոդալական-ճորտատիրական հասարակության հիմնական դասակարգերն էին՝ 1) ֆեոդալ— ճորտատերերը— հողի և արտադրության միջոցների տերերը, 2) ճորտ գյուղացիները, որոնք զրկված էին արտադրության հիմնական միջոցից— հողից և ճորտական կախման մեջ էին գտնվում ֆեոդալ—ճորտատերերից— կալվածատերերից:

«Ճորտը,— գրում էր Մարքսը,— վաճառում է իր բանվորական ուժի միայն մի մասը: Ոչ թե նա է վարձ ստանում հողի սեփականատիրոջից, այլ ընդհակառակը, հողի սեփականատերն է հարկ ստանում նրանից: Ճորտը հողի պիտույքն է և պտուղ է տալիս հողի սեփականատիրոջը»[7]):

6) Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», էջ 527, 10-րդ հրատարակություն.

7) Կարլ Մարքս— «Վարձու աշխատանք և կապիտալ», էջ 22.

Ճորտատիրական կարգերը լիկվիդացիայի ենթարկվեցին նրանց դեմ գյուղացիության և կապիտալիստական հասարակության նոր առաջ եկած դասակարգերի՝ քաղաքների պրոլետարիատի ու բուրժուազիայի մղած պայքարի հետևանքով: Արևմտյան Յեվրոպայի բուրժուական հեղափոխությունները, վորոնք ուղղված եյին ճորտատիրության դեմ, տապալեցին ֆեոդալներին, և ճորտատիրության փոխարեն ամրապնդվեցին կապիտալիստական կարգերը: Այդ հասարակության հիմնական դասակարգերն են հանդիսանում՝ 1) կապիտալիստները— արտադրության միջոցների տերերը— և 2) բանվորները— արտադրության միջոցներից զրկված պրոլետարները, վորոնք իրավաբանորեն ազատ են, բայց տնտեսապես ճորտացված՝ կապիտալի կողմից, քանի վոր աշխատանքի բոլոր միջոցները գտնվում են կապիտալիստների ձեռքում: Բանվորն «ազատ է» միայն ձեռնարկատեր— կապիտալիստի ընտրության մեջ,— վորը նրան շահագործում է:

Ընկեր Ստալինը, հարվածային կոլտնտեսականների համագումարում ասաց, վոր



բոլոր հեղափոխությունները, բացի սոցիալիստականից, հասցնում եյին տիրապետող, շահագործող մի դասակարգի փոխարինմանը մյուսով. մնում եյին մասնավոր սեփականությունը, չունեվորների ճնշումն ու շահագործումն ունեվորների կողմից:

«Ժողովուրդների պատմությունը,—ասում է ընկեր Ստալինը,—քիչ հեղափոխություններ չգիտե: Դրանք Հոկտեմբերյան հեղափոխությունից տարբերվում են նրանով, վոր նրանք բոլորն էլ միակողմանի հեղափոխություններ եյին: Աշխատավորների շահագործման մի ձևը փոխարինվում է շահագործման մի այլ ձևով, բայց շահագործումն ինքը, մնում եր: Մի տեսակ շահագործողներն ու կեղեքիչները փոխարինվում եյին մի այլ տեսակի շահագործողներով ու կեղեքիչներով, բայց շահագործողներն ու կեղեքիչներն իրենք, մնում եյին: Միմիայն Հոկտեմբերյան հեղափոխությունն եր, վոր իրեն նպատակ դրեց— վոչնչացնել ամեն մի շահագործում և վերացնել

բոլոր ու ամեն տեսակի չահագործողներին և կեղեքիչներին»[3]):

Դասակարգային հասարակության գոյության ամբողջ պատմության ընթացքում, պատմական զարգացման շարժիչ ուժը հանդիսանում է դասակարգային պայքարը: Դասակարգային պայքարում, նրա ամենասուր ձևի միջոցով — հեղափոխության քաղաքացիական պատերազմի միջոցով — յերկրի յերեսից ջնջվում են տիրապետող հին դասակարգերը, վորոնք դառնում են նյութական արտադրական ուժերի զարգացման արգելակ, խոչընդոտ: Դասակարգային պայքարի և հեղափոխության հետեվանքով, տիրապետության գլուխ են կանգնում նոր հասարակական ուժեր, վորոնք հանդիսանում են պատմականորեն պրոգրեսիվ, հասարակության հետագա զարգացմանը նպաստող:

Այն, վոր հասարակությունը բաժանվում է դասակարգերի և վոր հասարակության ներսում տեղի յե ունենում դասակարգային պայքար, գիտնականները գիտեյին դեռ նախքան Մարքսը:

Ֆրանսիական մեծ ուտոպիստներ Ֆ.

8) Ի. Ստալին — «Լենինիզմի հարցերը», եջ 527



Ֆուրյեն և Սեն-Սիմոնը, ֆրանսիական պատմաբաններ Գիզոն և Տյերին, գերմանական փիլիսոփա Հեգելն արդեն գիտեյին, վոր գույքային դրությունը հասարակությունը բաժանում է դանազան խմբերի: Ավելին, նրանք հասնում եյին (ճիշտ է այդ բանն արտահայտելով վոչ բոլորովին ճշգրիտ) մինչև դասակարգային պայքարի պատճառների ըմբռնումը, մատնանշելով վոր պայքարը հասարակության մեջ տեղի յե ունենում հարստությունների վոչ հավասար բաշխման պատճառով:

Բայց այդ դեռ բնավ դասակարգային պայքարի օրենքների գիտական ըմբռնումը չեր: Միայն պրոլետարիատի մեծ գիտնականներ Մարքսն ու Ենգելսն առաջին անգամ տվեցին այդ օրենքների իսկական գիտական ըմբռնումը, բացահայտեցին հասարակությունը դասակարգերի բաժանվելու հիմքերը և դասակարգային հակասությունների եյությունը:

Հիմնականը, գլխավորը, դասակարգային պայքարի մասին մարքսիզմի ուսմունքի մեջ, գրում եր Լենինը, դասակարգային պայքարի ընդունումը չե (այդ ընդունում են շատերը, այդ թվում նաև բուրժուա-

ները), այլ դասակարգային պայքարի ընդունումը մինչև պրոլետարիատի դիկտատուրայի ընդունման հասցնելը:

Մարքս-լենինյան ուսմունքը դասակարգային պայքարի մասին, հատուկ ուշադրություն է հատկացնում պրոլետարիատի կուսակցության ղեկավար դերին: Բանվոր դասակարգը միայն այն ժամանակ է դուրս գալիս դասակարգային մարտերի ճշմարիտ ճանապարհը, երբ նրա գլուխ կանգնած է մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով զինված կուսակցություն: Այնքան ժամանակ, քանի դեռ բանվոր դասակարգը չունի իր հեղափոխական կուսակցությունը, պայքարը կրում է տարերային, չկազմակերպված, բաժան-բաժան բնույթ: Բանվոր դասակարգի հեղափոխական կուսակցությունը— պրոլետարիատի կազմակերպիչը, դասախարակն ու առաջնորդն է հանդիսանում:

Հեղափոխական կուսակցության կազմակերպումով, պրոլետարիատի դասակարգային պայքարը հասնում է ե՛լ ավելի բարձր աստիճանի: Բանվորների տարերային շարժումը, բանվորների վրա կուսակցության ազդեցության աճմանը զուգընթաց, դառնում է ավելի ու ավելի կազմակերպված,



գործնական, պայքարի առօրյա տնտեսական հարցերը կապվում են քաղաքական պահանջների հետ, պրոլետարիատի դիկտատուրայի համար մղվող պայքարի հետ, սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարի հետ:

Առանց հեղափոխական կուսակցության, անհնարին է պրոլետարական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակը, անհնարին է սոցիալիզմի, կոմունիզմի հաղթանակը:

«Կուսակցությունը,— ասում է ընկեր Ստալինը,— պրոլետարիատի դասակարգային միավորման միայն բարձրագույն ձևը չէ՛, դրա հետ մեկտեղ, նա մի գործիք է պրոլետարիատի ձեռքին՝ դիկտատուրան նվաճելու համար երբ այն դեռ նվաճված չէ, դիկտատուրան ամրապնդելու և ընդարձակելու համար՝ երբ այն արդեն նվաճված է»[9]):

Անցյալում գոյություն ունեցած և այժմ գոյություն ունեցող բոլոր շահագործող դասակարգերն իրենց առջև խնդիր էին դնում՝ և դնում են՝ հավերժացնել դասա-

[9]) Ի. Ստալին— «Լենինիզմի հարցերը», էջ [illegible]

կարգային հասարակությունը և միայն մեկ դասակարգ— պրոլետարիատն է իր առջեվ խնդիր դնում վոչնչացնել արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, վոչնչացնել մարդու շահագործումը մարդու կողմից, վոչնչացնել դասակարգերն առհասարակ, կառուցել անդասակարգ կոմունիստական հասարակություն:

Պրոլետարիատի դասակարգային պայքարի ամբողջ պատմությունը տանում է դեպի այդ նպատակը: Բայց դրա իրականացման վճռական պայմանն է հանդիսանում պրոլետարիատի վերածումը ճնշված դասակարգից՝ տիրապետող դասակարգի, բուրժուազիայի դիկտատուրայի տապալումը և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը: Իսկ այդ հնարավոր է միայն բուրժուազիայի դեմ պրոլետարիատի դասակարգային պայքարի ամենասուր ձևի — պրոլետարական հեղափոխության միջոցով:

***

Քսան տարի սրանից առաջ, 1917 թվի հոկտեմբերին, Լենինի—Ստալինի կուսակցության ղեկավարությամբ մեր յերկրում տապալվեց կապիտալիստների ու կալվա-



ծատերերի տիրապետությունը: Բանվոր դասակարգը, դաշն կնքած ամենաչքավոր գյուղացիության հետ, իշխանությունը վերցրեց իր ձեռքը, դարձավ տիրապետող դասակարգ, հաստատեց իր դիկտատուրան: Պաշտպանելով Խորհուրդների յերկրի անկախությունը բոլոր յերկրների իմպերիալիստների զինված ներխուժումից և յերկրի ներսում կապիտալիզմի վերականգնման փորձերից, բանվոր դասակարգը ձեռնամուխ յեղավ իր պատմական միսիայի կատարմանը— նոր, կոմունիստական հասարակության կառուցմանը:

Այժմ, կոմունիստական հասարակության առաջին կամ ստորին փուլը— սոցիալիզմը— մեր յերկրում հիմնականում կառուցված է:

ԽՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի փաստը, ԽՍՀՄ-ի աշխատավորների՝ կապիտալիստական ստրկությունից ազատագրվելու փաստը և ԽՍՀՄ-ում ծավալուն, մինչեվ վերջ հետեվողական դեմոկրատիայի հաղթանակի փաստը գրի յե առնված Ստալինյան Սահմանադրության— բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության Սահմանադրության մեջ:

Կապիտալիստական և կոմունիստական հասարակության միջև ընկած է անցման շրջանը— առաջինը, հեղափոխական ճանապարհով, յերկրորդին վերափոխվելու շրջանը: Անցման շրջանի խնդիրն է՝ վերջնականապես վոչնչացնել կապիտալիստական դասակարգերը և շահագործման հիմքը— արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը:

Այդ պատմական միսիան կատարում է պրոլետարիատի դիկտատուրան: Պրոլետարիատի դիկտատուրայի եյությունը Լենինն ու Ստալինը բնորոշել են սպառիչ լիակատարությամբ, այդ— անցյալում տիրապետած շահագործող դասակարգերի դիմադրության անողոք ճնշումն է, կապիտալիստական դասակարգերի լիակատար վերացումը յերկրում, սոցիալիստական ու կոմունիստական հասարակության կառուցումը, աշխատավորների դաստիարակությունը սոցիալիզմի, կոմունիզմի վոգով:

Մշակելով Մարքսի ուսմունքը պրոլետարիատի դիկտատուրայի մասին, Լենինն ու Ստալինը հատուկ ուշադրություն նվիրեցին բանվոր դասակարգի հեղափոխական կուսակցության՝ վորպես պրոլետարիատի



դիկտատուրայի ղեկավար ուժի՝ դերին, բանվոր դասակարգի և գյուղացիության փոխհարաբերություններին, գյուղացիության դերին, վորպես պրոլետարական հեղափոխության ռեզերվ: Լենինը և Ստալինը բացառիկ լիակատարությամբ ու խորությամբ մշակեցին պրոլետարիատի ղեկավար դերի հարցը՝ գյուղացիության հետ հաստատած նրա դաշինքի մեջ, վճռական նշանակություն տալով այդ դաշինքի պահպանմանն ու ամրապնդմանը սոցիալիզմի համար մղվող պայքարում, այդ արտահայտված է Լենինի ֆորմուլայի մեջ.

«Դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը—այդ, գյուղացիության հետ պրոլետարիատի դաշինքի պահպանումն է, վորպեսզի նա կարողանա իր ձեռքում պահել ղեկավար դերն ու պետական իշխանությունը»[10]):

— Այդ խնդիրները— շահագործողների դիմադրության ճնշումը և գյուղացիության աշխատավոր մասսաների հետ դաշինքի պահպանումն ու ամրապնդումը— ամենասերտ կերպով ու անխզելիորեն կապ

10) Վ. Ի. Լենին— Յերկեր, հատ. 26-րդ, եջ 460

դիր քաղաքական շահեր: Խորհրդային ժողովրդի քաղաքական շահերի միասնությունը— մեր սոցիալիստական հայրենիքի հզորության ու բարգավաճման յերաշխիքն է: ԽՍՀՄ-ի քաղաքացու պարտքը մեր յերկրում հանդիսանում է վոչ թե պետության հանդեպ ունեցած պարտականությունների ձևական կատարումն, այլ յուրաքանչյուր աշխատավորի պատվի գործը:

Սոցիալիստական բարոյականությունը մասսաների դաստիարակման մեծագույն զենքն է հանդիսանում: Ժողովրդի քաղաքական ու բարոյական միասնությունն արտահայտում է սոցիալիզմի մեծագույն նվաճումը՝ աշխատավորների մեջ կոմունիստական գիտակցություն մշակելու գործում: Այդ, սոցիալիստական հասարակության մեծ ուժի վկայությունն է: ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների ընտրական կամպանիան ցույց տվեց, թե վորքան մեծ է խորհրդային ժողովրդի քաղաքական ու բարոյական միասնությունը:

Այդպիսի միասնությունը հնարավոր դարձավ միայն այն հասարակության մեջ, վորտեղ վոչնչացված են շահագործող դա-



սակարգերը, վորտեղ բացակայում են դասակարգային անտագոնիստական հակասությունները:

Մեր յերկրի հետագա զարգացումը կոմունիզմի ուղիով, կտանի դեպի խորհրդային ժողովրդի քաղաքական ու բարոյական է՛լ ավելի մեծ միասնություն: Մենք ընթանում ենք քաղաքի և գյուղի միջև մտավոր ու ֆիզիքական աշխատանքի միջև յեղած հակադրության հետագա վերացման ուղիով: Համաժողովրդական տնտեսության հուժկու շարժումը բարձրացնում է ժողովրդական տնտեսության արտադրողական ուժերը, նպաստում է բոլոր աշխատավորների ունևոր, կուլտուրական կյանքի աճմանը, նրանց բարձրացմանը ինժեներա-տեխնիկական աշխատանքի աշխատողների մակարդակին:

Յերբ տարբերությունները քաղաքի և գյուղի միջև, բանվորների և գյուղացիների միջև, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև լրիվին վերանան,— մեր հասարակությունը կվերածվի ծավալուն կոմունիստական հասարակության, վորի հիմնական սկզբունքը կլինի՝ «Յուրաքանչյուրից ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ նրա պահանջմունքների»:

ված են միմյանց հետ և մեկն անհնարին է իրականացնել առանց մյուսի: Նոր, սոցիալիստական հասարակությունը կառուցել կարելի չե միայն բոլոր միջոցներով ճնշելով շահագործողների ամեն մի դիմադրություն, խեղդելով մեռնող դասակարգերի կողմից ցուցաբերվող ամեն մի փորձ՝ վերադարձնելու իրենց յերբեմնի տիրապետությունը. Նոր, սոցիալիստական հասարակությունը կառուցել կարելի չե միայն իր հետևից տանելով աշխատավորների ամբողջ մասսային:

Սոցիալիզմը ծնունդ է առնում և զարգանում է դասակարգային կատաղի պայքարում, որն անհրաժեշտ է ոչ միայն նրա համար, որպեսզի լիկվիդացիայի յենթարկել շահագործող դասակարգերը, այլ նաև անհրաժեշտ է բոլոր աշխատավորներին սոցիալիզմի, կոմունիզմի ոգով վերադաստիարակելու համար:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության նախօրյակին, հին Ռուսաստանի դասակարգային ստրուկտուրան բնութագրվում եր հետևյալ դասակարգերի առկայությամբ՝ 1) կապիտալիստներ և կալվածատերեր— շահագործող, տնտեսա-



պես ու քաղաքականապես տիրապետող դասակարգեր. Նրանց եյին պատկանում ֆաբրիկները, գործարանները, հողը, նրա ընդերքը. 2) բանվոր դասակարգը— որը զրկված եր արտադրության միջոցներից, ստիպված եր իր բանվորական ուժը վաճառել— կապիտալիստներին, կալվածատերերին և կուլակներին. 3) գյուղացիներ (չքավորներ և միջակներ)— յերկրի բնակչության ճնշող մեծամասնությունը, որոնք ունեյին մանր ու մանրագույն հողակտորներ, որոնց համար ցարական կառավարությունն ու կալվածատերերը բարձր հարկեր եյին կորզում նրանցից: Գյուղացիությունը ընդհուպ մինչև Հոկտեմբերյան հեղաշրջման մոմենտը, գտնվում եր կալվածատերերից կիսաճորտական կախման մեջ, զուրկ եր քաղաքական իրավունքներից, աշխատում եր կալվածատերերի ու կուլակների համար, որի հետևանքով գյուղացիության ճնշող մեծամասնությունն ապրում եր ծայրահեղ աղքատության մեջ, քայքայման յեզրին: Բավական է մատնանշել այն փաստը, որ մինչև հեղափոխությունը գյուղացիական տնտեսությունների մեջ կային՝ չքավորներ— 65 տոկոս, մի-

ջակներ— 20 տոկոս, կուլակներ— 15 տոկոս: Գյուղացիական տնտեսությունների ընդհանուր թվից ձիազուրկներ էին— 30 տոկոսը, ինվենտարազուրկներ— 34 տոկոսը, ցանքազուրկներ— 15 տոկոսը: Կարիքը, չքավորներին աշխատանք վորոնելու համար, քշում էր Հարավ, Հյուսիսային Կովկաս և Ուկրաինա, վարձվելու կուլակների ու կալվածատերերի մոտ, վորպես բատրակ:

Այսպիսին էր դասակարգերի փոխհարաբերությունը և դրությունը Ռուսաստանում, Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունից առաջ:

1917 թվի հոկտեմբերին տապալվեց բուրժուազիայի ու կալվածատերերի իշխանությունը և մեր յերկրում հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրա: Բուրժուազիան և կալվածատերերը էքսպրոպրիացիայի յենթարկվեցին: «Աշխատավորներն ազատագրված են դարավոր կեղեքիչներից ու շահագործողներից, կալվածատերերից ու կապիտալիստներից»,—[11] գրում էր Լենինը: Ֆաբրիկները, գործարանները, հողը և նրա ընդերքը, արտադրության բա-

11) Վ. Ի. Լենին— Յերկեր, հատ. 24-րդ, էջ 513.



զար հիմնական միջոցները, վորոնք առաջ պատկանում էին տիրապետող շահագործող դասակարգերին, հայտարարվեցին պետական հանրային սեփականություն և անցան բանվորա-գյուղացիական իշխանության— բանվորական և գյուղացիական պատգամավորների խորհուրդների տրամադրության ու վերահսկողության տակ:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հետեվանքով յերկրում արմատապես փոխվեց դասակարգերի միջեվ յեղած փոխհարաբերությունը: Բանվոր դասակարգը դարձավ տիրապետող դասակարգ. «Պրոլետարիատը, տապալելով բուրժուազիային և նվաճելով քաղաքական իշխանությունը, դարձավ տիրապետող դասակարգ...[12]: Աշխատավոր գյուղացիությունն ազատագրվեց կալվածատիրական ճնշումից ու շահագործումից, ստացավ հող, քաղաքական իրավունքներ, լայնորեն անմիջական մասնակցության ներգրավվեց պետության կառավարման մեջ՝ բանվոր դասակարգի ղեկավարությամբ:

12) Վ. Ի. Լենին— Յերկեր, հատ. 24-րդ, էջ 513.

Բանվոր դասակարգը և նրա դաշնակիցը— աշխատավոր գյուղացիությունը— դարձան Խորհրդային Ռուսաստանի հիմնական դասակարգերը: Մեր հասարակության տնտեսական ու քաղաքական ստրուկտուրան սկսեց վորոշվել— առաջին հերթին և գլխավորապես— այդ հիմնական դասակարգերի փոխհարաբերությամբ:

Բուրժուազիան և կալվածատերերը գլխովին ջախջախված լինելով հեղափոխության կողմից, շարունակում եյին միջազգային բուրժուազիայի աջակցությամբ կատաղի կերպով դիմադրել նոր կարգերին: «Տապալված շահագործողների դասակարգային պայքարը չհահագործվողների հաղթանակած ավանգարդի դեմ, այսինքն պրոլետարիատի դեմ, դարձավ անչափ ավելի կատաղի»,—[13]) գրում էր Լենինը:

Գյուղում նոր կարգերին համառ դիմադրություն էր ցույց տալիս կուլակությունը— շահագործող այդ վերջին ու ամենաբազմաթիվ դասակարգը մեր յերկրում: Գյուղացիական տնտեսությունը հեղափոխությունից հետո շարունակում էր

13 Վ. Ի. ԼԵՆԻՆ, Յերկեր հատոր 24, եջ 514



մնալ վորպես մանր ապրանքային տնտեսություն.

«Այստեղ,— գրում էր Լենինը,— մենք ունենք կապիտալիզմի չափազանց լայն, շատ խոր, շատ ամուր արմատներ ունեցող բազա: Այդ բազայի վրա կապիտալիզմը պահպանվում և նորից ծնունդ է առնում— կոմունիզմի դեմ մղած ամենակատաղի պայքարում»[14]):

Այսպիսով, դասակարգերի փոխհարաբերությունը հեղափոխությունից հետո դարձավ այսպիսին: Պրոլետարիատ— տիրապետող դասակարգ, և գյուղացիական չքավորությունը, վորպես պրոլետարիատի հենարան. գյուղացիություն (աշխատավոր)— բանվոր դասակարգի դաշնակիցը. բուրժուազիա, կուլակություն, վորոնք ջախջախված եյին բաց կռվում, բայց դեռևս արմատախիլ չեյին արված և ամենակատաղի դիմադրություն եյին ցույց տալիս խորհրդային կարգերին:

Մեր յերկրի եկոնոմիկայում հեղափոխությունից հետո քանակական տեսակետից ամենամեծ տեղը գրավեց մանր-գյու-

14 Նույն տեղը, եջ՝ 509

գյուղական տնտեսությունը, վորը հան-
դիսանալով կապիտալիզմի ամուր բազան,
սնում էր կուլակությանը և վորոշ չափով
պայմաններ ստեղծում նրա աճման հա-
մար:

Կուսակցությունը հետևողականորեն
վարում էր կուլակության սահմանափակ-
ման ու արտամղման գիծը, ոգնություն և
աջակցություն էր ցույց տալիս չքավոր և
միջակ տնտեսություններին, հող էր նախա-
պատրաստում գյուղատնտեսության կո-
լեկտիվացման, և համատարած կոլեկտի-
վացման բազայի վրա, կուլակությունը
վորպես դասակարգ վերացնելու համար:

Լենինի–Ստալինի կուսակցության քաղա-
քականության դեմ, սոցիալիստական շի-
նարարության դեմ կատաղի պայքար սկսե-
ցին բանվոր դասակարգի և բոլոր աշխա-
տավորների թշնամիները— հակահեղափո-
խական տրոցկիստներն ու կապիտալիզմի
աջ ռեստավրատորները: Հիտլերական ֆա-
շիզմի բանակը գլորված, ժողովրդի թըշ-
նամի, ֆաշիստական բանդայի պարա-
գլուխ Տրոցկին, աղաղակելով մեր յերկ-
րում սոցիալիզմ կառուցելու անհնարինու-
թյան մասին, աշխատավոր գյուղացիու-



թյան հետ բանվոր դասակարգի դաշինքի
անհնարինության մասին յերկրին ամեն
կերպ դրդում էր դեպի այդ դաշինքի
խզման ուղին, կապիտալիզմի ռեստավրա-
ցիայի ուղին: Ֆաշիստական բանդայի պա-
րագլուխ Ն. Բուխարինը և նրա ամբողջ
ֆաշիստական բանդան, ձգտելով թմրեցնել
բանվոր դասակարգին, և կուլակությանը
փրկել ջախջախումից, քարոզում եյին
«կուլակի խաղաղ ներաճումը սոցիալիզմի
մեջ», տարածում եյին հակալենինյան
թեորիաներ, թե հեղափոխությունից հետո
մեզ մոտ մնում է իբր թե «մաքուր»
«յերկդասակարգյան» հասարակություն:
Այդ «թեորիան» դասակարգային թշնա-
մուն դուրս էր թողնում տեսադաշտից և
հռչակելով «դասակարգային պայքարի
մարումը», փորձում էր կուսակցության
ուշադրությունը շեղել չհաշտվող դա-
սակարգերի դեմ մղվող պայքարից:

Մեր կուսակցությունը, ընկեր Ստալինի
ղեկավարությամբ, հետևելով Լենինի
ցուցումներին, ջախջախեց խորհրդային
ժողովրդի թշնամիներին: Լենինը սովո-
րեցնում էր, վոր «պրոլետարիատի դիկ-
տատուրան— պրոլետարիատի՝ աշխատա-

վորների ավանգարդի՝ և աշխատավորների բազմաթիվ վոչ պրոլետարական շերտերի (մանր-բուրժուազիա, մանր-տնտեսատերեր, գյուղացիություն, ինտելիգենցիա և այլն) կամ նրանց մեծամասնության միջև դասակարգային դաշինքի հատուկ ձևն է, դաշինք՝ կապիտալի դեմ, դաշինք՝ կապիտալի լիակատար տապալման, բուրժուազիայի դիմադրության և նրա կողմից արվող ռեստավրացիայի փորձերի լիակատար ճնշման նպատակով, դաշինք՝ սոցիալիզմը վերջնականապես ստեղծելու և ամրապնդելու նպատակով»[15]):

Պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակով դասակարգային պայքարը չդադարեց. այն դարձավ ե՛լ ավելի կատաղի (քաղաքացիական պատերազմ), ե՛լ ավելի համառ դարձավ ջախջախված դասակարգերի դիմադրությունը: Բայց այդ պայքարն ընդունեց նոր ձևեր:

Լենինը սովորեցնում է, վոր պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակից հետո, դասակարգային պայքարն ընդունում է նոր ձևեր: Սաբոտաժը, լրտեսությունը, վնասարարությունը, դավադրություն-

15) Վ. Ի. Լենին, Երկեր հատոր 24, եջ 311



ները և այլն, դառնում են պայքարի այն ձևեր, վորոնք սոցիալիզմի թշնամիների կողմից կիրառվում են պրոլետարիատի դիկտատուրայի պետության դեմ: Վերջին տարիների ընթացքում ժողովրդի թշնամիների դեմ մղված պայքարի փորձը ցույց տվեց, թե սոցիալիզմի դեմ մղվող պայքարի թշնամական մեթոդները վորքան նենգ են, նուրբ, դիմակավորված: Այս բոլորը ցույց է տալիս, վոր բոլշևիկներն ու բոլոր աշխատավորները պետք է թշնամիների դեմ մղվող պայքարում լինեն զգաստ, անհաշտ և անողոք:

Քսան տարվա ընթացքում բանվոր դասակարգի մղած պայքարի ամբողջ պատմության լույսի տակ, հատկապես ցայտուն կերպով է դրսևորվում «դասակարգային պայքարի մարման» բուխարինական թեորիայի դավաճանական, ֆաշիստական էությունը:

Պրոլետարիատի դիկտատուրայի մասին բրոշյուրի կոնսպեկտի մեջ Լենինը գրում է, վոր բոլոր ոպորտունիստների դժբախտությունն կայանում է նրանում, վոր նրանք դասակարգային պայքարի գաղափա-

րը չեն հասցնում մինչև պրոլետարիատի դիկտատուրան․

«Սոցիալիստների» կողմից պրոլետարիատի դիկտատուրայի չըմբռնման հիմնական աղբյուրն այն է, որ նրանք դասակարգային պայքարի գաղափարը չեն հասցնում մինչև վերջ...

Պրոլետարիատի դիկտատուրան պրոլետարիատի դասակարգային պայքարի շարունակումն է, նոր ձևերով։ Սրա մեջ է մեխը, այդ՝ չեն հասկանում։ Պրոլետարիատը, որպես հատուկ դասակարգ, մենակ, շարունակում է մղել իր դասակարգային պայքարը»[16])։

Բանվոր դասակարգի կողմից իշխանությունը գրավվելուց հետո, պրոլետարիատի դիկտատուրայի օրոք, դասակարգային պայքարի բովանդակությունը, նրա ձևերն ու մեթոդները դարձան այլ։ Պրոլետարիատի դասակարգային պայքարի խնդիրը դարձավ շահագործողների դիմադրության հաղթահարումը, ժողովրդական տնտեսության վերականգնումն ու սոցիալիզմի հիմքի կառուցումը, շահագործող

16 Լենինյան ժողովածու 3-րդ, էջ 500·



դասակարգերի վերացման պայմանների նախապատրաստումն ու դրա իրականացումը, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը։

Կոնկրետ, այդ խնդիրը հանգում է այն բանին, որ ստեղծվի սեփական խոշոր, սոցիալիստական արդյունաբերություն և այդ հիման վրա արդյունաբերության միջից վերջնականապես դուրս մղի մասնավոր կապիտալը։ Ընկեր Ստալինը կուսակցության 16-րդ համագումարում հայտարարեց որ մասնատիրական ու կապիտալիստական հատվածը գնում է դեպի իր կործանումը։

Հարկավոր էր սեփական ինդուստրիայի ստեղծման հիման վրա զարգացնել գյուղատնտեսական մեքենաշինությունը, տեխնիկական բազա կառուցել գյուղատնտեսության համար, ամրապնդել բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հետ, մանր, բաժան-բաժան, անհատական տնտեսությունը փոխադրել խոշոր, համախմբված, կոլեկտիվ տնտեսության ռելսերի վրա։ Այդ խնդիրը հիմնականում կատարվեց առաջին հնգամյակի ընթացքում․ գյուղատնտեսությունը դարձավ սո-

ցիալիստական, առաջավոր մեքենայական տեխնիկայով զինված։ Արտադրության սոցիալիստական յեղանակը, հանձին կոլտնտեսային կարգի, հաղթանակեց նաև գյուղատնտեսության մեջ։

Գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացման հիման վրա հարկավոր եր լիկվիդացիայի յենթարկել գյուղատնտեսական բուրժուազիային— կուլակությունը։ Այդ խնդիրը ևս կատարված ե— կուլակությունը վորպես դասակարգ լիկվիդացիայի յե յենթարկված։

Կապիտալիստական տարրերը դուրս են մղված առևտրի ասպարեզից։ Մեր ժամանակակից առևտուրը— այդ, խորհրդային առևտուր ե՝ առանց մեծ ու փոքր կապիտալիստների, առևտուր՝ առանց մեծ ու փոքր սպեկուլյանտների։

Այսպիսով, շահագործող դասակարգերը մեր յերկրում լրիվին լիկվիդացիայի յեն յենթարկված։ Այդ— մարքսիզմի, բանվոր դասակարգի մեծագույն, համաշխարհային— պատմական նշանակություն ունեցող հաղթանակն ե, Լենինի-Ստալինի կուսակցության հաղթանակը։

Ընկեր Ստալինն ամփոփելով մեր յեր-



կրում շահագործող դասակարգերի դեմ մղված պայքարի արդյունքները, Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8-րդ համագումարում տված իր զեկուցման մեջ ասաց․

«Կալվածատերերի դասակարգը, ինչպես հայտնի յե, արդեն վերացված եր քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտման հետևանքով։ Ինչ վերաբերում ե մյուս շահագործող դասակարգերին, ապա նրանց ել բաժին ընկավ կալվածատերերի դասակարգի բախտը։ Չկա այլևս կապիտալիստների դասակարգն արդյունաբերության բնագավառում։ Չկա այլևս կուլակների դասակարգը գյուղատնտեսության բնագավառում։ Չկան այլևս վաճառականներն ու սպեկուլյանտներն ապրանքաշրջանառության բնագավառում։ Այդպիսով, բոլոր շահագործող դասակարգերը վերացվեցին»[17])։

---

17) Ի. Ստալին.— Զեկուցում ԽՍՀ Միության Սահմանադրության նախագծի մասին, եջ 14–15. ՀԱՄԿ(բ)Կ Կենտկոմի Կուսհրատ, 1937 թ.

## ԽՍՀՄ-ի ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԿԱԶՄԸ

| | 1913 թ. | 1937 թ. |
|---|---|---|
| | Տոկոսներով՝ ընդհանուր թվի համեմատությամբ | |
| Բանվոր ծառայողներ . . . . . . . . . . . | 16,7 | 34,7 |
| Այդ թվում՝ | | |
| Խորհտնտեսությունների և ՄՏԿ-ների բանվորների ու ծառայողների . . . . . . . . | — | 3,2 |
| Կոլտնտեսային գյուղացիություն և կոոպերացված տնայնագործներ ու արհեստավորներ | — | 55,5 |
| Մենատնտես գյուղացիներ (առանց կուլակների) և չկոոպերացված աշխատավորներ, տնայնագործներ ու արհեստավորներ . . . . . | 65,1 | 5,6 |
| Բուրժուազիա (կալվածատերեր, քաղաքային խոշոր ու մանր բուրժուազիա, առևտրականներ ու կուլակներ) . . . . . . . . . . | 15,9 | — |
| Այդ թվում՝ կուլակներ . . . . . . . . . | 12,3 | — |
| Այլ բնակչություն (ուսանողներ, թոշակառուներ, բանակ և այլն) . . . . . . . . . . . | 2,3 | 4,2 |
| Ընդամենը | 100,0 | 100,0 |

Այս հաջողություններին բանվոր դասակարգը հասավ դասակարգային կատաղի պայքարում: Այդ պայքարը տեղի էր ունենում ինչպես անմիջականորեն թշնամի դասակարգերի դեմ այնպես և գյուղացիության վրա ազդեցություն ձեռք բերելու համար: Սոցիալիզմի թշնամիները— կուլակությունը, կապիտալիզմի տրոցկիստական ու աջ ռեստավրատորները— ձըգտում էին գյուղացիությանը ենթարկել կապիտալիստական տարրերի ազդեցությանը, պահանջելով զիջումներ անել կուլակությանը, կամ թե ամեն կերպ չափազանցնելով, մեծացնելով բանվոր դասակարգի և գյուղացիության միջև եղած հակասությունները:

Կործանիչ հակահարված տալով բանվոր դասակարգի թշնամիների փորձերին, ընկեր Ստալինը Մոսկվայի կուսակցական ակտիվին տված զեկուցման մեջ, 1925 թվի մայիսի 9-ին ասաց.

«Որ փոքր հակասություններ պրոլետարիատի և գյուղացիության միջև գոյություն ունեն,—այդ, իհարկե, չի կարելի ժխտել: Ամբողջ հարցն այն է, թե մենք կարո՞ղ ենք արդյոք մեր

սեփական ուժերով հաղթահարել պրոլետարիատի և գյուղացիության միջև գոյություն ունեցող այդ հակասությունները»:

«...Պրոլետարիատի և գյուղացիության միջև յեղած հակասություններից բացի կան նաև ընդհանուր շահեր՝ զարգացման արմատական հարցերի վերաբերյալ, վորոնք գերազանցում են և, համենայն դեպս, կարող են գերազանցել այդ հակասությունները, և վորոնք հանդիսանում են բանվորների ու գյուղացիների դաշինքի բազան, հիմքը»[18]):

1926 թվին ընկեր Ստալինը մատնանշում եր.

«Ներքին կարգի հակասությունները կայանում են, նախ և առաջ, գյուղացիության նկատմամբ ղեկավարություն ունենալու համար սոցիալիստական ու կապիտալիստական տարրերի պայքարի մեջ»[19])»:

---

18) Ի. Ստալին, «Լենինիզմի հարցեր», եջ 120, 9-րդ հրատ.

19) Ի. Ստալին «Ընդդիմության մասին», եջ 396.



Կուսակցությունն ընկեր Ստալինի ղեկավարությամբ հետևողականորեն իրականացնելով մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը դասակարգերի և պրոլետարական դիկտատուրայի մասին, հաջողությամբ լուծեց այդ հակասությունները՝ հօգուտ սոցիալիզմի. գյուղացիությունը գնաց բանվոր դասակարգի հետևից և վերջնականապես կանգնեց սոցիալիզմի կարմիր դրոշի տակ:

Դրան համապատասխան, փոխվեց նաև մեր հասարակության դասակարգային ստրուկտուրան: Բոլոր շահագործող դասակարգերը մեր յերկրում լիկվիդացիայի յեն յենթարկված: Մնացել են բանվոր դասակարգը, գյուղացիության դասակարգը և ինտելիգենցիան, ընդ վորում, այդ սոցիալական խմբերն եյական կերպով փոխվել են:

Ընկեր Ստալինը մատնանշեց.

«Մարքսն ասում եր. վորպեսզի պրոլետարիատն ազատագրի իրեն, նա պետք է ջախջախի կապիտալիստների դասակարգը, խլի կապիտալիստներից արտադրության գործիքներն ու միջոցները և վոչնչացնի արտադրության

այն պայմանները, վորոնք պրոլետարիատ են ծնում: Արդյոք կարելի՞ յե ասել, վոր ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգն արդեն իրականացրել է իր ազատագրման այդ պայմանները: Անպայման կարելի յե, և պե՛տք է ասել: Իսկ այդ ի՞նչ է նշանակում: Այդ նշանակում է, վոր ԽՍՀՄ-ի պրոլետարիատը փոխարկվել է միանգամայն մի նոր դասակարգի, ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգի, վորը վոչնչացրել է տնտեսության կապիտալիստական սիստեմը, հաստատել է արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականություն և տանում է խորհրդային հասարակությունը կոմունիզմի ուղիով:

Ինչպես տեսնում եք, ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգը — դա մի բոլորովին նոր, շահագործումից ազատագրված բանվոր դասակարգ է, վորի նմանը մարդկության պատմությունը դեռ չի իմացել[20])»:

Ընկեր Ստալինն իր մի շարք աշխա-

20) Ի. Ստալին— Զեկուցում ԽՍՀՄ Սահմանադրության նախագծի մասին, եջ 15-16.



տությունների մեջ տվել է նաև կոլտնտեսային գյուղացիության սպառիչ բնորոշումը: Մարքսիստ-ագրարագետների կոնֆերանսում արտասանած ճառի մեջ ընկեր Ստալինն ասաց.

«Ինչո՞վ է վորոշվում տնտեսության տիպը: Ակներև է, վոր արտադրության պրոցեսի մեջ մարդկանց ունեցած հարաբերություններով: Ուրիշ ել ի՞նչով կարելի յե վորոշել տնտեսության տիպը: Բայց մի՞թե կոլտնտեսության մեջ կա այնպիսի մարդկանց դասակարգ, վորոնք արտադրության միջոցների սեփականատերեր են, և այնպիսի մարդկանց դասակարգ, վորոնք զուրկ են արտադրության այդ միջոցներից: Մի՞թե կոլտնտեսության մեջ կա շահագործողների դասակարգ և շահագործվողների դասակարգ: Միթե կոլտնտեսությունն արտադրության հիմնական գործիքների հանրայնացումը չէ այն հողի վրա, վորն, ի հավելում դրան, պետությանն է պատկանում: Ի՞նչ հիմք կա պնդելու, թե կոլտնտեսությունները, վորպես տնտե-

ութեան ակի, սոցիալիստական տնտեսության ձևերից մեկը չէ[21])»:

Այս դրույթից հետևում է պարզ ու անվիճելի յեզրակացություն, վոր կոլտնտեսային գյուղացիությունն այլևս չի հանդիսանում այն դասակարգը, ինչպիսին յեղել է գյուղացիությունը հին ժամանակ:

Հին գյուղացիությունը մանր – ապրանքարտադրողների դասակարգ եր, մանր մասնավոր սեփականատերերի դասակարգ: Իսկ կոլտնտեսային գյուղացիությունն իր եյությամբ, իր բնույթով չի հանդիսանում մանր– ապրանքարտադրողների դասակարգ: Գյուղացիությունն արդեն դադարել է կապիտալիզմ ծնող բազա լինելուց: Վոմանք կասեն՝ «Բայց չե՞, վոր կոլտնտեսականը նույնպես ապրանքներ է արտադրում և դրանք վաճառում է շուկայում»: Բայց արդյո՞ք նա նույն այն ապրանքարտադրողն է, ինչ վոր հանդիսանում եր հին գյուղացին, վորն աշխատում եր իր հողակտորի վրա, արտադրության միջոցների տերն եր հանդիսանում վորպես մենատնտես: Բանն էլ հենց այն է, վոր վո՛չ:

21) Ի. Ստալին. «Լենինիզմի հարցեր», եջ 311, 10-րդ հրատ.



Նախ՝ մենատնտեսի մոտ առևտրի հիմքն ու աղբյուրը հանդիսանում եր արտադրության միջոցների սեփականությունը. յերկրորդ՝ այդ առևտուրն անխուսափելիորեն տանում եր դեպի մասնավոր-կապիտալիստական տարրերի աճում, դեպի գյուղի շերտավորում: Իսկ խորհրդային, կոլտնտեսային առևտուրն սկզբունքորեն տարբերվում է հին առևտրից: Կոլտնտեսային առևտուրը — առևտուր է առանց մասնավորի ու սպեկուլյանտի:

Ընկեր Ստալինը բնութագրելով այն փոփոխությունները, վորոնք կատարվել են մեր խորհրդային գյուղացիության մեջ ասաց.

«Մեր խորհրդային գյուղացիությունը միանգամայն նոր գյուղացիություն է: Մեզանում այլևս չկան կալվածատերեր ու կուլակներ, վաճառականներ ու վաշխառուներ, վորոնք կարողանային շահագործել գյուղացիներին: Հետևաբար, մեր գյուղացիությունը շահագործումից ազատագրված գյուղացիություն է: Այնուհետև, մեր խորհրդային գյուղացիությունն իր ճնշող մեծամասնությամբ կոլտնտեսային գյուղացիություն է, այսինքն՝ նա

իր աշխատանքը և իր ստացվածքը հիմնում է ոչ թե անհատական աշխատանքի ու հետամնաց տեխնիկայի վրա, այլ կոլեկտիվ աշխատանքի և ժամանակակից տեխնիկայի վրա: Վերջապես, մեր գյուղացիության տնտեսության հիմքում ընկած է ոչ թե մասնավոր սեփականությունը, այլ կոլեկտիվ սեփականությունը, որն աճել է կոլեկտիվ աշխատանքի բազայի վրա:

Ինչպես տեսնում եք, խորհրդային գյուղացիությունը — դա միանգամայն նոր գյուղացիություն է, որի նմանը դեռ չի իմացել մարդկության պատմությունը[22]»):

Կոլտնտեսությունը — սոցիալիստական տնտեսություն է, բայց կոլտնտեսականի մեջ դեռ հաճախ ջերևան է գալիս մանր-սեփականատիրական, մանր-բուրժուական վերաբերմունք դեպի կոլտնտեսային, սոցիալիստական տնտեսությունը: Որոշ ընկերներ չփոթում են տնտեսության ձևը, նրա տիպը, արտադրական հարաբերությունների բնույթը՝ կոլտնտեսականների գիտակ-

22) Ի. Ստալին. Զեկուցում ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի մասին, էջ 16–17.



ցության որոշ հետամնացության առկայության հետ (արտադրական հարաբերությունների նոր ձևերից գիտակցության հետ մնալու հետ), կոլտնտեսականների մեջ դեռևս մի շարք դասակարգային գծերի առկայության հետ, որոնք պահպանվել են այն ժամանակաշրջանից, երբ նրանք մանր սեփականատերեր էին:

Ժամանակակից, խորհրդային գյուղացիությունը, որն անցել է կոլտնտեսություններ, այսինքն՝ կոլտնտեսային գյուղացիությունը, դադարել է մանր ապրանքարտադրողների դասակարգ լինելուց, բայց նա դեռ չի դադարել գյուղացիության դասակարգ լինելուց՝ մի շարք էական, թեկուզ և ոչ հիմնական, մոմենտների պատճառով:

Երբ գյուղացիությունը վերջնականապես դադարի դասակարգ լինելուց, կորցնի գյուղացիության՝ որպես դասակարգի՝ բոլոր առանձնահատկությունները, բոլոր դասակարգային հատկանիշները, — այդ արդեն կլինի կոմունիզմ, այսինքն՝ այնպիսի հասարակություն, որտեղ վերջնականապես ջնջվել են բոլոր դասակարգային սահմանները: Իսկ առայժմ չի կարելի մոռանալ և աչքաթող անել այն հանգա-

մանքը, վոր կոլտնտեսության և պետական ձեռնարկության միջև, կոլտնտեսականների ու բանվոր դասակարգի միջև, դեռևս կա վորոշ տարբերություն:

Արտադրության միջոցները կոլտնտեսության մեջ գտնվում են կոլեկտիվի, արտելի ձեռքում: Կոլտնտեսականները, պետությանը հացահատիկ հանձնելուց և սերմացվի ու այլ ֆոնդերի գանձման պլանները կատարելուց հետո, յեկամուտներն ըստ աշխօրերի բաշխելու կարգով, իրենց ձեռքն են ստանում գյուղատնտեսական մթերքները, վորը նրանք տնօրինում են սեփական հայեցողությամբ, վաճառում են այն կոլտնտեսային շուկայում: Բացի դրանից, կոլտնտեսականն ունի նաև օժանդակ, անձնական տնտեսություն — պարտեզ, կով, և այլ ընտանի անասուններ: Կուսակցությունը և կառավարությունն անհրաժեշտ են գտնում գյուղացիական տնտեսության արտելային ձևը — կոլտնտեսականների ունևորության այդ հիմքը — ամեն կերպ ամրապնդելուն զուգընթաց, ըստ ամենայնի ոգնել կոլտնտեսականներին՝ նրանց անձնական տնտեսության պահպանման և բարելավման գործում:

Սեփականության պետական ձևի և



կոոպերատիվ-կոլտնտեսային ձևի միջև յեղած տարբերության հետ և կապված նաև մեր հասարակության դասակարգային բնույթի յուրահատկությունը:

Ընկեր Մոլոտովը ՀամԿ(բ)Կ 17-րդ կոնֆերանսում նշեց.

«Բանվոր դասակարգը, իր դասակարգային դրության հատուկ պայմանների ուժով, ընթանում է գյուղացիության առջևից, սոցիալիստական տնտեսության՝ տվյալ փուլում բարձրագույն՝ ձևերի վրայով: Անցյալում գյուղացիության աշխատավոր մասսայի դրության առանձնահատկություններից, բխում են դեպի անդասակարգ սոցիալիստական հասարակությունը տանող նրա ուղիների առանձնահատկությունները (անցման մի շարք լրացուցիչ աստիճաններ, մեծ ժամկետներ և այլն)»:

Բանվոր դասակարգի սոցիալիստական դաստիարակության վճռական գործոնն է դարձել աշխատանքի՝ գնալով աճող՝ սոցիալիստական կարգապահությունը, սոցիալիստական մրցությունն ու հարվածայնությունը: Կոլտնտեսություններում, աշխատանքի սոցիալիստական կարգապահու-

թյան մշակման պրոցեսն ընթանում է անչափ ավելի մեծ դժվարություններով, քան արդյունաբերության մեջ: Անհատական տնտեսության մեջ դարերի ընթացքում կազմավորված մանր-սեփականատիրական ունակությունների, դեպի հանրային սեփականությունը — մանր-սեփականատիրական վերաբերմունքի — այս բոլորի հաղթահարումը պահանջում է վիթխարի ջանքեր, համառ աշխատանք՝ կոլտնտեսականների սոցիալիստական դաստիարակության ուղղությամբ:

Պայքարը մանր-սեփականատիրական ունակությունների դեմ հանուն աշխատանքի նոր կարգապահության, գյուղում միշտ ամենակատաղի դիմադրության է հանդիպել կուլակության, յենթակուլակների, լոդրերի, ոպորտունիստների կողմից, ինչպես նաև կոլտնտեսային գյուղացիության հետամնաց տարրերի կողմից:

Միայն դասակարգային կատաղի պայքարի միջոցով, ոպորտունիզմի դեմ պայքարելու միջոցով, հակահեղափոխական տրոցկիզմի ու բուխարինականության ջախջախման միջոցով, կուսակցությունը հաջողությունների հասավ կոլտնտեսային կարգի



հաղթանակի ու ամրապնդման գործում. շարունակելով այդ պայքարը, ամեն կերպ բարձրացնելով հեղափոխական զգաստությունը, կուսակցությունն ու բանվոր դասակարգը խորհրդային գյուղացիությանը տանում է դեպի սոցիալիզմի նորանոր հաղթանակներ, անհրաժեշտ նախադրյալներ ստեղծելով լիակատար կոմունիզմին անցնելու համար:

Ամրապնդելով սեփականության կոլտնտեսային ձևը գյուղատնտեսության մեջ, ուժեղացնելով մեքենա-տրակտորային կայանների դերը վորպես գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման կարևորագույն լծակներ, ամրապնդելով աշխատանքի սոցիալիստական կարգապահությունը, հարվածայնությունն ու սոցիալիստական մրցությունը, բանվոր դասակարգի դիկտատուրան ավելի ու ավելի յե հաղթահարում գյուղացիության հին, մանր-բուրժուական ունակությունները, հին, մանր-սեփականատիրական վերաբերմունքը դեպի աշխատանքը և դեպի հանրային սեփականությունը:

Բանվոր դասակարգի ղեկավարությամբ մեր յերկրի գյուղացիությունը մեծ ճանա-

պարզ անցավ՝ կալվածատերերին, կապիտալիստներին վոչնչացնելուց և կուլակությունը վորպես դասակարգ վերացնելուց, դեպի կոլտնտեսային կարգի վերջնականապես ամրապնդումը: Այդ ղեկավար դերը (հասարակության պետական ղեկավարումը) բանվոր դասակարգը կկատարի այսուհետև ևս, այնքան ժամանակ, մինչև վոր ամբողջ հասարակությունը— բոլոր աշխատավորները, բանվոր դասակարգի հետ միասին— կվերածվի՝ բառի լիակատար իմաստով՝ կոմունիստական հասարակության աշխատավորների, վորոնք գիտակցաբար ու բարի կամքով հասարակությանը կտան ըստ իրենց ընդունակությունների և կստանան նրանից ըստ իրենց պահանջի:

Լենին-Ստալինի կուսակցությունը հաջողությունների հասավ սոցիալիզմի հաղթանակի գործում միայն այն պատճառով, վոր նա հանդիսանում է միակ կուսակցությունը, վորը և' թեորիայում, և' գործնականում հետևողականորեն կիրառում է մարքս-լենինյան ուսմունքը դասակարգերի և դասակարգային պայքարի մասին: Սոցիալիզմի կառուցումը, դասակարգերի վոչընչացումը, գյուղացիության սոցիալիս-



տական վերափոխումը, բանվոր դասակարգի կոմունիստական դաստիարակությունը— այս բոլորը կատարվում է դասակարգային կատաղի պայքարի միջոցով, սոցիալիզմի թշնամիների անողոք ջախջախման, ժողովրդի թշնամիներին — տրոցկիստական — բուխարինական ֆաշիստական լրտեսներին, վնասարարներին, դիվերսանտներին— մերկացնելու և արմատախիլ անելու միջոցով:

Կուսակցությունը պայքար է մղում և' նրանց դեմ, ովքեր թերագնահատում են դասակարգային թշնամու կողմից սպառնացող վտանգը և' նրանց դեմ, ովքեր «թռչկոտելով» դասակարգային պայքարի չանցած էտապների վրայով, վնաս են հասցնում սոցիալիստական շինարարությանը:

Լենինը, պայքարելով օպորտունիզմի դեմ, գրում էր, վոր մարքսիստը— նա չէ, ով միայն ընդունում է դասակարգային պայքարը, այլ նա, ով դասակարգային պայքարի ընդունումը տարածում է մինչև պրոլետարիատի դիկտատուրայի ընդունումը: Իսկ այդ նշանակում է, վոր ներկայումս մարքսիստ-լենինյան է նա, ով վոչ միայն ընդունում է պրոլետարիատի դիկ-

տատուրան (այդ այժմ չի կարելի չընդունել— այն պատմական փաստ է), այլ նա, որ գործնականում իրականացնում է պրոլետարիատի դիկտատուրայի խնդիրները— դասակարգերի վոչնչացումը կատաղի պայքարի միջոցով, անդասակարգ կոմունիստական հասարակության կառուցումը— որ անողոք պայքար է մղում սոցիալիզմի մահացու թշնամիների դեմ— տրոցկիստների ու բուխարինականների՝ միջազգային ֆաշիզմի այդ անարգ լրտեսների, ԽՍՀՄ-ում կապիտալիզմի վերականգնման պաշտպանների դեմ:

***

ԽՍՀՄ-ը հանդիսանում է բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետությունը: Մեր երկրում վերջնականապես ու անդառնալիորեն վոչնչացված են շահագործող դասակարգերը: Մեր հասարակությունը կազմված է բանվորներից, գյուղացիներից և ինտելիգենցիայից:

Բանվոր դասակարգը ԽՍՀՄ-ում իրականացնում է հասարակության պետական ղեկավարումը (դիկտատուրան), վորովհետև նա ամենաառաջավորը, ամենակարգապահը, ամենակազմակերպվածն ու ամենագի-



տակիցն է բոլոր դասակարգերի մեջ: Բանվոր դասակարգը բոլոր աշխատավորներին ցույց է տալիս դեպի աշխատանքը, դեպի հանրային սեփականությունը, դեպի կարմիր բանակի շարքերում քաղաքացիական պարտքի կատարումը սոցիալիստական վերաբերմունքի որինակ: Պարզ է, վոր մեր բանվոր դասակարգը դադարել է պրոլետարիատ լինելուց՝ բառի հին իմաստով: Այնպիսի դասակարգ, ինչպիսին խորհրդային բանվոր դասակարգն է, պատմությունը դեռ չի իմացել:

Սոցիալիզմը— այդ, դասակարգերի վոչընչացումն է,— սովորեցնում են Լենինն ու Ստալինը: ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգը, դաշն կնքած աշխատավոր գյուղացիության հետ, վոչնչացրեց կապիտալիզմը, վոչնչացրեց շահագործող դասակարգերը և սոցիալիզմ կառուցեց մեր երկրում: Սոցիալիզմի համար մղվող պայքարի ընթացքում բանվոր դասակարգը վերջնականապես ազատագրվեց գոյության հին պայմաններից և այդ, մարդկային պատմության զարգացման մեջ մեծագույն քայլ է հանդիսանում դեպի առաջ:

Գյուղացիությունն իր հիմնական մասսա-

յով մեր յերկրում այլեւս չի հանդիսանում մանր ապրանքարտադրողների դասակարգ, արտադրության միջոցների մասնավոր սեփականատերերի դասակարգ։ Մեր գյուղացիությունը— կոլտնտեսային գյուղացիություն է։ Գյուղատնտեսության մեջ արտադրության անբաժանելիորեն տիրապետող յեղանակն է հանդիսանում արտադրության հանրային, սոցիալիստական յեղանակը։

Մեր ամբողջ ժողովրդական տնտեսությունը, և՛ քաղաքում և՛ գյուղում— սոցիալիստական է։ ԽՍՀՄ-ի տնտեսական հիմքն է կազմում սոցիալիստական սեփականությունը՝ իր յերկու ձևերով. այն և— համաժողովրդական (պետական) սեփականություն և կոոպերատիվ— կոլտնտեսային սեփականություն։

Սոցիալիստական սեփականության յերկու ձևերի առկայությունն էլ հենց պայմանավորում է այն, վոր մեզանում դեռևս պահպանվել են դասակարգերը— բանվորներն ու գյուղացիները։ Բայց դրանք միմյանց նկատմամբ բարեկամ դասակարգեր են։ Մեր հասարակությունը դասակարգային է, բայց ի տարբերություն նախորդ և գոյություն ունեցող բոլոր դասակարգային հա-



սարակություններից, մեզանում չկան դասակարգային անտագոնիստական հակասություններ։

ԽՍՀՄ-ում բանվորների և գյուղացիների միջև, ինչպես սովորեցնում է ընկեր Ստալինը, դեռևս գոյություն ունեն վորոշ հակասություններ, այդ թվում նաև քաղաքական։ Բայց դրանք արմատական հակասություններ չեն։ Այդ հակասությունները արդյունք են այն բանի, վոր հին հասարակության մնացորդները վոչնչացված են դեռևս վո՛չ մինչև վերջ։ Դասակարգային առանձնացումը, դասակարգային սահմանները բանվորների և գյուղացիների միջև— անցյալի այդ ժառանգությունը—վերանում են, ջնջվում ավելի ու ավելի մեծ չափով։

Մեր հասարակությունը դադարել է բառի հին իմաստով դասակարգային հասարակություն լինելուց։ Այդ— նոր, սոցիալիստական հասարակություն է։ Ընկեր Ստալինը խոսում եր մեր ժողովրդի քաղաքական ու բարոյական միասնության մասին։ Այդ նշանակում է, վոր ժողովրդի քաղաքական շահերը միասնական են։ Վո՛չ բանվորները, վո՛չ գյուղացիները, վո՛չ ինտելիգենցիան չունեն առանձնակի և հակա-



Ի տեղի պատ. խմբագրի՝ Հ. ԴՈՆՈՅԱՆ
ԳԼԱՎԼԻՏԻ ԼԻԱԶՈՐ Ն—5151. պատվեր 19
Տիրաժ 6266
Հանձնված է արտադրության 14/I 1968 թ.
Ստորագրված է տպագրության 17/I 1968 թ.

«ԽՈՐՀՐԴ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ,
ԵՐԵՎԱՆ